Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 10 1949

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։*


# ՆՎԱՃԵՆՔ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԻՆ ՄԱՍՆԱԿՑԵԼՈՒ ԻՐԱՎՈՒՆՔԸ

*ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշմամբ 1950 թվին բացվելու է Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը։*

*Նախապատերազմյան տարիներում Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը խոշոր դեր խաղաց մեր երկրում գյուղատնտեսության հետագա վերելքի գործում։ Հազարավոր կոլխոզնիկներ, ծանոթանալով ցուցահանդեսում ներկայացված սոցիալիստական գյուղատնտեսության բոլոր բնագավառներում ձեռք բերված հաջողություններին, իրենց արտադրության մեջ ներդրեցին փորձը, առաջավոր կոլխոզների նվաճումները, որոնք զգալի դեր խաղացին ինչպես գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու անասնա-*

պահության մթերատվության բարձրացման, այնպես և մյուս ապարեզներում։

Նախապատերազմյան տարիներին Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում իրենց արժանավոր տեղն ունեին մեր ռեսպուբլիկայի առաջավոր կոլխոզները, սովխոզները, մեքենա-տրակտորային կայանները, գիտա-հետազոտական հիմնարկները և գյուղատնտեսության բազմաթիվ առաջավորներ։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունը մեծ խանդավառությամբ ընդունեց 1950 թվին Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի աշխատանքների վերսկսման և նրան մասնակցելու պայմանների մասին որոշումը։

1950 թվին Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում կցուցադրվի սոցիալիստական գյուղատնտեսության՝ ստալինյան հնգամյակների ընթացքում ձեռք բերած հաջողությունները ու նրա զարգացման հեռանկարները։ Այստեղ պետք է արտահայտվի մեր գյուղատնտեսության ծաղկող կուլտուրան, աշխատավորության ունևոր կյանքը, գյուղատնտեսության հագեցվածությունն առաջնակարգ տեխնիկայով, որոնք ուրախության ու հպարտության



զգացումով են լցնում մեր աշխատավորության սրտերը։ Ցուցահանդեսն ամբողջ աշխարհի առաջ կցուցադրի սովետական երկրի հզորությունը, կոլխոզային կարգերի հաղթանակներն ու նրա զարգացման հեռանկարները։ Այստեղ իր ամբողջ մեծությամբ կարտացոլվի մեր հերոս ժողովրդի մղած պայքարը Հայրենական Մեծ պատերազմի տարիներին և ստեղծագործական աշխատանքի այն արդյունքները, որոնց մեր ժողովրդական տնտեսությունը հասել է հետպատերազմյան 4-րդ հնգամյակի տարիներում։

Ցուցահանդեսում լայնորեն ցույց կտրվի տափաստանային և անտառատափաստանային շրջանների բնության վերափոխման և անասնապահության զարգացման եռամյա ստալինյան պլանները։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում կցուցադրվի նաև Հայաստանի գյուղատնտեսության ձեռք բերած հաջողությունները հացահատիկի, բամբակի, շաքարի ճակնդեղի, ծխախոտի, խաղողի, գինեգործության, պտղաբուծության, եթերայուղատարածային կուլտուրաների, անասնապահության, շերամապահության, դաշտապաշտպան անտառատնկման, խոտադաշտային ցանքաշրջանառության և այլ բնագա-

վառներում: Կցուցադրվեն մեր առաջավոր
շրջանների ՄՏ կայանների, կոլխոզների,
սովխոզների լավագույն աշխատանքի ար-
դյունքները, որոնք նրանք ձեռք են բերել
համաժողովրդական սոցիալիստական մըր-
ցության մեջ, մեծ առաջնորդ ընկեր
Ստալինին տրված իրենց խոստումների կա-
տարման շնորհիվ:

Լայնորեն ցուցադրվելու է գիտության նը-
վաճումները, Հայկական ՍՍՌ Գիտություն-
ների Ակադեմիայի ինստիտուտների, գյու-
ղատնտեսական փորձագիտական կայաննե-
րի, գիտահետազոտական հիմնարկների,
բարձրագույն ուսումնական հաստատու-
թյունների հաջողությունները, որոնք ձեռք են
բերվել Տիմիրյազևի, Միչուրինի, Վիլյամսի
Լիսենկոյի և մյուս գիտնականների առաջա-
վոր ուսմունքի հիման վրա:

Համամիութենական գյուղատնտեսական
ցուցահանդեսին մասնակցելը համարվում է
ամեն մի կոլխոզի, կոլխոզնիկի, առաջավոր
աշխատողի, գիտնականի, փորձագետի և
գյուղատնտեսության կազմակերպչի պատվի
գործը: Գյուղատնտեսական ցուցահանդեսին
մասնակցելու իրավունք է վերապահվում
այն կոլխոզներին, սովխոզներին, ՄՏ կա-
յաններին և կոլխոզների ու սովխոզների ա-



նասնապահական ֆերմաներին, որոնք նախ
երկու տարում՝ 1948 և 1949 թ.թ. միջին հաշ-
վով ստացել են կուլտուրաների այնպիսի
բերք, կամ հասել են անասունների այնպի-
սի մթերատվության, կամ մեքենաների այն-
պիսի արտադրողականության, որոնք ցած
չեն այն ցուցանիշներից, ինչ սահմանված է
մեր ռեսպուբլիկայի համապատասխան գո-
տիների համար:

1948 թ. աշխատանքների արդյունքները
ապացուցում են, որ մեր ռեսպուբլիկայում
շատ կան այնպիսի կոլխոզներ, կոլխոզային
ֆերմաներ, ՄՏ կայաններ, գիտահետազո-
տական փորձակայաններ ու այլ տնտեսու-
թյուններ, որոնք մի քանի բնագավառների
գծով գերազանցել են սահմանված ցուցա-
նիշները:

Սահմանված ցուցանիշների համաձայն
մեր կոլխոզները, սովխոզները և առաջա-
վորները կարող են մասնակցել բամբակի,
շաքարի ճակնդեղի, ծխախոտի, հացահատի-
կի, բանջարա-բոստանային կուլտուրաների,
խաղողի, պտղատու կուլտուրաների, շերա-
մապահության, անասնապահության և գյու-
ղատնտեսության մնացած բոլոր բնագա-
վառների գծով:

Համամիութենական գյուղատնտեսական

ցուցահանդեսին մասնակցելու համար սահմանված ցուցանիշները մատչելի են բոլոր կոլխոզներին, սովխոզներին, հողօգտագործողներին և գյուղատնտեսության բոլոր առաջավորներին, եթե նրանք աշխատեն բարձր բերքի և անասունների բարձր մթերատվության հասած վարպետների օրինակով։

Բավական է նշել, որ Արտաշատի, Վեդու, Ջանֆիդասարի շրջանների կոլխոզները բամբակի գծով կարող են մասնակցել Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին, եթե նրանք 1948 և 1949 թ. թ. բամբակենու ցանքի ամբողջ տարածությունից ստանան միջին հաշվով մեկ հեկտարից ոչ պակաս 22 ցենտներ բամբակի հում։ Մինչդեռ 1948 թ. ցուցանիշները ցույց են տալիս, որ քիչ չեն այնպիսի կոլխոզներ, որոնք ստացել են բամբակենու ցանքի ամբողջ տարածությունից շատ ավելի բարձր բերք, քան սահմանված է նրանց համար։ Այդպիսիների շարքին են պատկանում Արտաշատի շրջանի Դարղալու գյուղի կոլխոզը, որը միջին հաշվով մեկ հեկտարից ստացել է 32,2 ցենտներ բամբակ։ Բարձր բերք են ստացել նույն շրջանի Վերին Արտաշատ, Ներքին Դվին, Գետազատ և ուրիշ գյուղերի կոլխոզ-



ներ ու առաջավորներ։ Այդ նույն կոլխոզները 1948 թ. բարձր բերք են ստացել նաև խաղողի գծով։ Փարիզյան Կոմունայի անվան կոլխոզը 262 հեկտար բերքատու խաղողի այգիներից միջին հաշվով մեկ հեկտարից ստացել է 78 ցենտներ խաղող, որը գերազանցում է սահմանված ցուցանիշները երեք ցենտներով։ Խաղողի գծով բարձր ցուցանիշների են հասել նույն շրջանի Գետազատ, Արևշատ և ուրիշ գյուղերի կոլխոզներ։

1948 թ. ցուցանիշներով Գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու թեկնածու են համարվում. հացահատիկի գծով՝ Թալինի շրջանի Այնալու, Սիսիանի շրջանի Ուռուտ, Սպանդարյան, Բարձրավան, Բայազետի շրջանի Լճափ, Հացառատ, Նորատուզ գյուղերի և շատ այլ շրջանների կոլխոզները։ Անասնապահության գծով բարձր ցուցանիշների են հասել Կալինինոյի շրջանի Սարատովկա, Ստեփանավանի շրջանի Կաթնաղբյուր, Ստեփանավան գյուղերի, Սիսիանի շրջանի Վաղուտի և այլ կոլխոզներ։

Ռեսպուբլիկայի կոլխոզները և առաջավորները գերազանց ցուցանիշներ ունեն ծխախոտի, սերմացուների, ձիաբուծության և գյուղատնտեսության այլ բնագավառների գծով։

1948 թ. մեքենաների արտադրողականու-

թյան բարձր ցուցանիշների են հասել ռես-
պուբլիկայի մի շարք մեքենա-տրակտորա-
յին կայաններ, որոնց թվին են պատկանում
Հոկտեմբերյանի, Կոտայքի, Ղարիբջանյանի,
Ախուրյանի և ուրիշ ՄՏ կայաններ։
Սակայն Գյուղատնտեսական ցուցահան-
դեսի մասնակից լինելու համար դեռ բավա-
կան չէ, որ կոլխոզները, սովխոզները և ՄՏ
կայանները հասնեն բերքատվության և մե-
քենաների արտադրողականության բարձր
ցուցանիշների։ Դրանց հետ միասին պետք է
տնտեսությունները լրիվ կատարեն պետու-
թյան հանդեպ ունեցած պարտավորություն-
ները 1948—1949 թ. թ. մթերքներ հանձնելու
գծով, ապահովեն անասնապահության զար-
գացման պետական պլանը մթերատու և
բանող անասունների գլխաքանակի գծով,
սեփական սերմացուով լրիվ ապահովեն 1949
և 1950 թ. թ. ցանքսերը և 1949 թ. ագրոան-
տառամելիորատիվ աշխատանքների պլանը։
Մեծ է մեր կոլխոզների, սովխոզների և
գյուղատնտեսության առաջավորների ձգտու-
մը՝ արժանանալու Համամիութենական գյու-
ղատնտեսական ցուցահանդեսին մասնակցե-
լու պատվին։ Նրանք այժմ գտնվում են 1949
թ. գյուղատնտեսական տարվա բարձր բերք
և բարձր ցուցանիշներ նվաճելու ամենապա-



տասխանատու ժամանակաշրջանում։ Այս
օրերին է, որ մեր կոլխոզները և սովխոզնե-
րը կատարում են հացահատիկի, բամբակի,
շաքարի ճակնդեղի, ծխախոտի և այլ կուլ-
տուրաների ցանքն ու խնամքը։ Այս օրերին
է, որ հիմք է դրվում խաղողի, պտղատու
այգիների մշակությանը և անասունների
բարձր մթերատվությանը։ Պետք է այժմյա-
նից ձեռք առնել բոլոր միջոցները բարձր
բերքի առաջավորների փորձի արդյունքները
և գյուղատնտեսության գծով գիտության նը-
վաճումները լրիվ չափով ներդնելու արտա-
դրության մեջ՝ բարձր ցուցանիշների հասնե-
լու համար։
Համամիութենական գյուղատնտեսական
ցուցահանդեսին մասնակցելու իրավունք
կարող են նվաճել ոչ միայն ցուցահանդեսի
անմիջական մասնակիցները, կոլխոզները և
առաջավորները, այլև բոլոր նրանք, ովքեր
նախապատրաստել են այդ մասնակցությու-
նը, ովքեր իրենց աշխատանքով օգնել են
կոլխոզներին՝ մտնելու ցուցահանդեսին
մասնակցողների շարքերը։
Ներկայիս առաջնահերթ խնդիրն է ուշա-
դրություն դարձնել այն բանին, որպեսզի ոչ
մի ընդհատում տեղի չունենա գյուղատնտե-
սական կուլտուրաների ցանքսի աշխատանք-

ների և նրանց մշակության մեջ։ Անցյալներում որոշ կոլխոզներում թույլ էր տրվում նման երևույթներ, երբ ցանքսի հաջող ավարտումից հետո տեղի էր ունենում հանգստի շրջան, որի հետևանքով ժամանակին և լավ որակով կատարված ցանքսերը հետագայում չէին տալիս սպասվելիք բերքը՝ խնամքի և մշակության ամենալավ ժամանակաշրջանը կորցնելու հետևանքով։

Պետք է աշխատանքներն այնպես կազմակերպել, որպեսզի լիկվիդացիայի ենթարկվի աշխատանքների մեջ նկատված հերթականությունը և ցանքսին զուգահեռ անմիջապես կազմակերպվի բամբակի, շաքարի ճակնդեղի, ծխախոտի, այգիների ու մնացած կուլտուրաների քաղհանը, նոսրացումը, փխրեցումը, ոռոգումը, վնասատուների դեմ պայքարը և մնացած խնամքի աշխատանքները։

Այժմ մեր ռեսպուբլիկայի կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները, մեքենա-տրակտորային կայանների և սովխոզների բանվորներն ու գյուղատնտեսության բոլոր աշխատողները ոչ մի ջանք չեն խնայում ամենակարճ ժամանակամիջոցում, ագրոտեխնիկական բարձր մակարդակի վրա անցկացնելու գարնան բոլոր գյուղատնտեսական աշխատանքները, որպեսզի այս տարի բոլոր կուլտուրա-



ների և անասնաբուծության գծով հասնեն նոր ու ավելի բարձր ցուցանիշների։ Հայաստանի գյուղատնտեսության առաջավորներն Մեծ առաջնորդ ընկեր ՍՏԱԼԻՆԻՆ ուղղած իրենց նամակներում խոշոր պարտավորություններ են ստանձնել 1949 թվի համար և նրանց նվիրված աշխատանքը ապացույց է, որ նրանք պատվով կկատարեն այդ խոստումները։

Մեր շրջանային պարտիական և սովետական օրգանների, տնտեսավարների, մասնագետների և ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ լայն կերպով մասսայականացնել և յուրաքանչյուր աշխատավորի սեփականությունը դարձնել Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու պայմանները և միջոցառումները, կազմակերպել ու գլխավորել սոցիալիստական մրցությունը և կոնկրետ օգնություն ցույց տալ տնտեսություններին և առաջավորներին՝ նվաճելու Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունքը։

Ն. ՂԱԶԱՐՅԱՆ

ՀՍՍՌ Մինիստրների Սովետին կից ցուցահանդեսային կոմիտեի նախագահի տեղակալ, ՀՍՍՌ Գյուղատնտեսության մինիստր։

# ԾԱՂԿՈՒՄ ՈՒ ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ Է ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԸ

*Օրեցօր բարեկարգվում և նոր տեսք է ստանում մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանը։ Սովետական իշխանության տարիներին հիմնովին փոխվել է նրա տեսքը։ Երբեմնի ցեխածեփ, հարթածածկ շենքերով, նեղ, ծուռ ու մուռ փողոցների լաբիրինթոսը, ջրազուրկ, փոշու և կեղտի մեջ կորած այդ քաղաքը, այժմ դարձել է ծաղկած ինդուստրիալ քաղաք իր լայն և լուսավոր պողոտաներով, կանաչազարդ պուրակներով, պետական, հասարակական հիմնարկությունների, դպրոցների, հիվանդանոցների, գեղատեսիլ շենքերով, բազմաթիվ գործարաններով ու ֆաբրիկաներով։*

*Ցեխաշեն խարխուլ շենքերն արագ կերպով իրենց տեղը զիջում են Հայաստանի երփներանգ տուֆից, բազալտից, գրանիտից*



*կառուցվող բազմահարկ շենքերի, հուշարձանների, ճարտարապետական կոթողների համար, ծուռումուռ փողոցները ուղղվում, վերածվում են լայն, ծառազարդ, ասֆալտապատ պողոտաների, քաղաքը հեղեղվում է էլեկտրական լուսավորությամբ։*

*Պատերազմն ընդհատեց քաղաքի վերակառուցման աշխատանքները, հետպատերազմյան հնգամյակի ընթացքում երևանցիները, ոգեշնչված պարտիայի, կառավարության և ընկեր Ստալինի կողմից դեպի քաղաքի բարեկարգումը ցուցաբերած բացառիկ հետաքրքրությունից, նոր թափով ձեռնամուխ եղան քաղաքի վերակառուցմանը։*

*Քաղաքի վերակառուցման գործում երևանցիները մի շարք լուրջ հաջողությունների հասան անցյալ տարի. քաղաքի շինարարության համար հատկացված գումարները լրիվ իրացվեցին։ Քաղաքի շինտրեստը և շինարարական գրասենյակը գերակատարեցին շինարարության պլանները, որի հետևանքով շահագործման հանձնվեց 27 բնակելի շենք 11372 քառակուսի մետր բնակելի տարածությամբ, մոտ 700 ընտանիքներ անցյալ տարվա ընթացքում ստացան նոր բնակարաններ։*

*Անցյալ տարվա ընթացքում առաջին ան-*

ռամ քաղաքի շինարարներին հաջողվեց սկսել և մեկ շինարարական սեզոնում հիմնականում ավարտել 12 հազ բնակելի, 4 հարկանի շենքերի կառուցումը։

Խոշոր աշխատանք ծավալվեց ճանապարհաշինարարության գծով։ Անցյալ տարի սկսվեց Միկոյանի անվան պողոտայի շինարարությունը, որը հիմնականում ավարտվեց այս տարի։ Պողոտան Լենինի հրապարակը ուղիղ գծով կապում է երկաթուղու կայարանի հետ, հատելով Գետառ գետը։

Լուրջ աշխատանք ծավալվեց Ստալինյան ռայոնում։ Այդ ռայոնի արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվները մեծ խանդավառությամբ սկսեցին Օրջոնիկիձեի պողոտան Ավտոդետալ գործարանի մոտով ուղիղ գծով Կիրովի անվան գործարանի երկրորդ մասին միացնող Բերիայի անվան փողոցի շինարարությունը, որը և հիմնականում ավարտվեց անցյալ տարվա ընթացքում։ Սպանդարյան ռայոնում սկսվեց Լերմոնտովի փողոցի շինարարությունը, Կիրովյան ռայոնում՝ Լենինի փողոցի բարեկարգման աշխատանքները և այլն։

Այսպիսով անցյալ տարի ճանապարհաշինարարության գծով ներդրվեց մոտ 5,5 միլիոն ռուբլի, որի հետևանքով քաղաքը



ստացավ մի շարք նոր փողոցներ, 2 նոր կամուրջ և 160 հազար քառակուսի մետր ասֆալտապատված տարածություն։

Շոշափելի աշխատանք կատարվեց քաղաքային տրանսպորտը զարգացնելու գծով. տրամվայի գծերը ավելացվեցին 1,5 կիլոմետրով, տրամվայի երթևեկող գնացքների թիվը 19-ից հասցվեց 30-ի, երթևեկող ավտոբուսների թիվը 17-ից 21-ի։

Հատուկ թափ ստացավ քաղաքի կանաչապատումը։ Անցյալ տարվա ընթացքում քաղաքում տնկվեց ավելի քան 100 հազար տնկիներ և կես միլիոն ծաղիկներ, ստեղծվեցին նոր պարկեր և պուրակներ Բաղրամյան փողոցի վրա, Հաղթանակի կամուրջի մոտ, բարեկարգվեցին. Կիրովի անվան և Դուկասյանի անվան պարկերը, որոնք այժմ կարելի է համարել քաղաքի լավագույն զբոսավայրերը։ Լուրջ աշխատանք ծավալվեց բնակելի շենքերի բակերի բարեկարգման գծով. մոտ 40 խոշոր բակեր բարեկարգվեցին, կանաչապատվեցին, մի շարք բակերում կառուցվեցին լողարաններ և շատրվաններ։

Շոշափելի աշխատանք կատարվեց դպրոցական շինարարության գծով, վերականգնվեց Միկոյանի պողոտայի վրա կա-

ուցված դպրոցի շինարարությունը, սկսվեցին Ջեյթունում, Արաբկիրում, Սարի Թաղում չորս նոր դպրոցների շինարարական աշխատանքները։

Բնակելի շենքերի, դպրոցների, հիվանդանոցների, ճանապարհների վերանորոգումների գծով ծախսվեց 14,3 միլիոն ռուբլի։

Այսպիսով անցյալ տարվա ընթացքում քաղաքի շինարարության համար ներդրվեց մոտ 52 միլիոն ռուբլի։

Ոգեվորված անցյալ տարվա հաջողություններով, Երևան քաղաքի աշխատավորները այս տարի նոր թափով ձեռնամուխ են եղել իրենց հարազատ քաղաքի կառուցման և բարեկարգման աշխատանքներին։ Այս տարի քաղաքի շինարարության և բարեկարգման աշխատանքների պլանը շատ ավելի մեծ է և ծավալուն։ Բավական է նշել, որ այս տարի քաղաքում կառուցվելու են մոտ 25 բնակելի բազմահարկ շենքեր, 7 դպրոց, 4 պոլիկլինիկա, 5 բաղնիք, 4 ակումբ-դրադարաններ և այլն։

Բնակարանային շինարարության գծով ներդրումները կազմելու են մոտ 14 միլիոն ռուբլի։ Սկսել է և հաջողությամբ ընթանում է Միկոյանի պողոտայի և Ամիրյան





փողոցի վրա կառուցվող բազմահարկ 10 բնակելի շենքերի շինարարությունը, որոնք նոր տեսք կտան այդ փողոցներին։

Այս տարվա շինարարական աշխատանքի պլանում հատուկ տեղ է գրավում Լենինի հրապարակի ձևավորումը։ Նախատեսված է և արդեն սկսվել է Կուլտուրայի տան վերակառուցումը։ Այդ շենքի դեպի հրապարակը նայող պատը վեր է ածվում սյունազարդ ճակատի՝ 24 մետր բարձրությամբ, որը առանձնահատուկ գեղեցկություն կտա հրապարակին։ Սկսվել է Աբովյան փողոցի վրա Արարատ տրեստի շենքի շարունակությամբ Արհեստագործական կոոպերացիայի վարչության շենքի շինարարությունը, որով կավարտվի հրապարակի այդ թևի ձևավորումը և հրապարակի դիմացի թևում գտնվող կառավարական տան շենքի հետ կստեղծվի ճարտարապետական հիանալի անսամբլ։ Նախատեսվում է առաջիկա շրջանում լայնացնել Ամիրյան փողոցը այն հաշվով, որ Հայաստանում սովետական իշխանության հաստատման երեսնամյակին կազմակերպ-

վելիք շքերթը հրապարակ մտնի այդ փողոցով և օգտագործվի Լենինի արձանին կից տրիբունը։

Սկսվել է Զանգու գետի վրա նոր, հոյակապ կամուրջի շինարարությունը, որը ուղիղ գծով միացնելու է Արաբկիրը Բերիայի ռայոնի կենտրոնին։ Այն իր ծավալով խոշոր չափով գերազանցելու է գոյություն ունեցող Հաղթանակի կամուրջը և լինելու է քաղաքի գեղեցկագույն կառուցումներից մեկը։

Առանձնահատուկ նշանակություն ունի Հաղթանակի մոնումենտի շինարարությունը, որը կատարվելու է Ստալինյան պողոտայի առանցքի վրա, Քանաքեռ տանող խճուղուց աջ գտնվող բարձրունքում։ Մոնումենտի ընդհանուր բարձրությունը կազմելու է 47—48 մետր, որից արձանի բարձրությունը լինելու է 17—18 մետր։ Այս մոնումենտը լինելու է քաղաքի ամենագեղեցիկ հուշարձաններից մեկը և ամենաբարձրը։

Այս տարի Երևանի բնակիչները կստանան նոր նվեր՝ երկրորդ կիսամյակում քաղաքում կգործի տրոլեյբուսը։



Զթուլացող տեմպերով շարունակվելու է ճանապարհաշինարարությունը։ Այժմ լարված աշխատանք է տարվում 26 կոմունարների անվան փողոցի վերակառուցման գծով, որը զգալիորեն լայնացվել է ու առաջիկա օրերի ընթացքում կավարտվի, Թամանցիների փողոցում, որը հիմնովին վերակառուցվում է, լայն աշխատանքներ է ծավալվում Նոր Արեշ, Նորք, Զեյթուն, Արաբկիր թաղամասերում։ Այսպիսով այս տարի քաղաքում կառուցվելու են 250 հազար քառակուսի մետր տարածությամբ ճանապարհ և փողոց։ Այս տարի հատուկ ուշադրություն է դարձվում քաղաքի կանաչապատման աշխատանքներին, այդ նպատակի համար արդեն ներմուծվել է ավելի քան մեկ միլիոն ռուբլու տնկիներ. քաղաքում տարվա ընթացքում տնկվելու է մոտ 300 հազար ծառ և մոտ 3 միլիոն ծաղիկներ։ Ստեղծվել են մի շարք նոր պուրակներ Հաղթանակ, Զեյթուն, Արաբկիր թաղամասերում, Սարի թաղում, Բաղրամյան փողոցում, Միկոյանի պողոտայի վրա, Կիրովի անվան գործարանի եր-

րորդ մասում, լայնացվել է Մոսկովյան փողոցի վրա գտնվող պուրակը. ծառատնկման գծով այս տարի ներդրումները կկազմեն մոտ 3 միլիոն ռուբլի։

Աննախընթաց ծավալով տարվում է բնակելի շենքերի, դպրոցների, հիվանդանոցների բակերի կանաչապատումը. այս տարվա ընթացքում պետք է ավարտվի քաղաքի բոլոր խոշոր բակերի բարեկարգումն ու կանաչապատումը։ Մի շարք միջոցառումներ է կատարվում ֆիզկուլտհրապարակների, լողարանների շինարարության գծով։

Մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինի ցուցումով Երևան քաղաքի աշխատավորները, Հայաստանի բոլշևիկների ղեկավար ընկ. Հարությունյանի ամենօրյա ղեկավարությամբ սկսել են քաղաքի նոր թաղամասերի բարեկարգման ծավալուն պլանի կենսագործումը։ Այդ թաղամասերում, որոնք հիմնականում բնակեցված են արտասահմանից Սովետական Հայաստան վերադարձած հայերով՝ այս տարի ներդրվելու է մոտ 9 մի-



լիոն ռուբլի։ Մեծ թափով սկսված այդ աշխատանքներին կամավոր կերպով ակտիվորեն մասնակցում են նույնպես և այդ թաղամասերի բնակիչները։ Արեշի, Սարի թաղի, Նորքի, Ձեյթունի, Հաղթանակի, Արաբկիրի աշխատավորների կամավոր մասնակցությունը իրենց թաղամասերի աշխատանքներին հասնում է տասնյակ հազար բանվորական օրվա, որի հետևանքով ժամանակին Նորք, Ձեյթուն, Հաղթանակ, Արեշ թաղամասերը ստացան խմելու ջուր, որոշ տեղեր ոռոգման ջուր, լուսավորություն։

Այս տարվա շինարարության և բարեկարգման գծով կատարվող ներդրումները անցյալ տարվա նույն նպատակների համար եղած ներդրումներից ավել են մոտ 20 միլիոն ռուբլով։

Այս տարվա շինարարական և բարեկարգման աշխատանքների պլանի կատարումը նախ և առաջ պայմանավորվում է քաղաքի բնակիչների լայն մասնակցությամբ. յուրաքանչյուր երևանցի՝ լինելով իր քաղաքի պատրիոտը, ուրախանալով ամեն մի պարկի ու պուրակի, ամեն մի փողոցի և պողոտա-

յի կառուցմամբ, պետք է անձնական մասնակցություն ունենա այդ ստեղծարար աշխատանքում։ Մեր քաղաքը վեր է ածվել շինարարական խոշոր հրապարակի։ Երևանի հազարավոր բնակիչներ, բազմաթիվ կոլեկտիվներ, մրցելով իրար հետ, եռանդուն կերպով մասնակցում են քաղաքի շինարարությանը։ Ագիտատորներն իրենց զրույցների ժամանակ պետք է պատմեն մեր մայրաքաղաքի շինարարության հոյակապ ծրագրի մասին, մոբիլիզացնեն աշխատավորներին՝ քաղաքի շինարարական աշխատանքներին մասնակցելու համար։

Հ. ԴՈՎԼԱԹՅԱՆ

Աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային սովետի գործկոմի նախագահի տեղակալ։

—○—



## ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ ԵՆ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Այս տարի Ստեփանավանի շրջանը անասնապահության զարգացման բնագավառում ձեռք է բերել զգալի հաջողություններ։ Գեբակատարված է խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքանակը, աճել է մայրական կազմը և բարձրացել է մթերատվությունը, անկումը զգալիորեն պակասել է, մատղաշների խնամքը ավելի լավ է կազմակերպված։ Բարձրացել է կոլխոզնիկների աշխատանքի արտադրողականությունը, լայն ծավալ է ստացել սոցիալիստական մրցությունը։ Ձեռք բերված հաջողությունները խոշոր չափով արդյունք են կազմակերպական տնտեսական միջոցառումներից բացի նաև կոլխոզային աշխատավորների մեջ քաղաքական-մասսայական աշխատանքի զգալի բարելավման։

Պարտիայի շրջանային կոմիտեն և սկզբ-

նական պարտիական կազմակերպությունները լուրջ ուշադրություն են դարձնում ագիտացիոն-մասսայական աշխատանքների հաջող կազմակերպման վրա. ագիտացիոն աշխատանքի մեջ են ներգրավված շրջանի պարտիական, սովետական ակտիվը և ինտելիգենցիայի լավագույն ուժերը։

Ռայոնի 21 ագիտկոլեկտիվները ընդգրկում են 418 ագիտատորներ, որոնց մեծ մասն ունի միջնակարգ և բարձրագույն կրթություն։ Ագիտատորների մեջ մեծ թիվ է կազմում գյուղական ինտելիգենցիան, հատկապես ուսուցչությունը։ Շրջանի յուրաքանչյուր ֆերմա, բրիգադա, օղակ ունի իր ագիտատորը։

Ագիտկոլեկտիվների ղեկավարների համար սիստեմատիկաբար կազմակերպվում են սեմինարներ, որտեղ դասախոսություններ են կարդացվում ՀամԿ(բ)Պ պատմության, միջազգային դրության, կազմակերպական հարցերի և այլ թեմաների շուրջը։ Համախակի սեմինար պարապմունքներ են լինում նաև ագիտատորների համար, որտեղ զեկուցումներ և զրույցներ են անցկացվում ՍՍՌ Միության միջազգային դրության և ներքին կյանքի, պարտիայի և կառավարության որոշումների, շրջանի առաջ դրված հերթական



հարցերի, ագիտացիոն աշխատանքի կազմակերպման մասին։

Ագիտատորների աշխատանքին լուրջ օգնություն է ցույց տալիս շրջանային պարտկաբինետը. այնտեղ ագիտատորների համար առանձնացված է անհրաժեշտ քաղաքական և գյուղատնտեսական գրականություն, ագիտատորները ցուցումներ են ստանում իրենց զրույցները կազմակերպելու, անհրաժեշտ գրականություն ընտրելու վերաբերյալ, պարզաբանում են իրենց հետաքրքրող հարցերը։

Շրջանի ագիտկոլեկտիվների մեջ իր լավագույն աշխատանքով աչքի է ընկնում Կաթնաղբյուր գյուղի կոլխոզի ագիտկոլեկտիվը։ Այստեղ ագիտատորները հանդիսանում են պարտիական կազմակերպության ակտիվ օգնականները կոլխոզնիկների մեջ պարտիայի և կառավարության որոշումները լայնորեն մասսայականացնելու գործում։

Կոլխոզի անասնապահական ֆերման շրջանում լավագույններից է։ 1948 թվին ֆերմայի յուրաքանչյուր ֆուրաժային կովից ըստացվեց 2915 լիտր կաթ, պլանով նախատեսված 2.000 լիտրի փոխարեն, ֆերմայի լավագույն անասնապահներից 1948 թ. ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամա-

նարում 10 մարդ պարգևատրվեցին Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով և 12 մարդ «Աշխատանքային արիության համար» մեդալով։ Ֆերմայի ձեռք բերած այս հաջողությունների մեջ իր պատվավոր տեղն ունի նրա ագիտատոր ընկ. Միսակ Մանուկյանը։ Ինչպես իր զրույցների ժամանակ, այնպես և առանձին կոլխոզնիկների հետ խոսելիս, ագիտատոր Մանուկյանը լայնորեն մասսայականացնում է առաջավոր անասնապահների աշխատանքի փորձը, օգնում կոլխոզնիկներին է՛լ ավելի լավ աշխատելու։ Անասնապահ կոլխոզնիկ Առաքել Նազարյանի հետ խոսելիս ագիտատոր Մանուկյանը նրան խորհուրդ տվեց զրուցել ֆերմայի առաջավոր անասնապահներ Կարապետ Կիրակոսյանի, Հմայակ Մարդոյանի, Պետրոս Հովհաննիսյանի հետ, որոնք արժանացել են կառավարական բարձր պարգևների, ծանոթանալ, թե ինչպես են նրանք աշխատում։ Առաքելյանը կատարեց ագիտատորի հանձնարարությունը և շատ բան սովորեց առաջավոր անասնապահներից ու սկսեց աշխատել նրանց օրինակով։

Ֆերմայի աշխատողների հետ իր ունեցած վերջին զրույցների ընթացքում ագիտատոր Մանուկյանը մասսայականացնում է ՍՍՌՄ



Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի՝ «Հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանը (1949—1951 թ. թ.)»։ Այդ մասին անցկացրած զրույցներից մեկի ժամանակ նա ձայն տվեց անասնապահ Առաքելյանին պատմելու, թե նա ինչպես հասավ իր այսօրվա հաջողություններին։

— Ինձ մեծապես օգնեց մեր ֆերմայի առաջավոր անասնապահների աշխատանքի փորձը,— ասաց Առաքելյանը։ Նրանց օրինակով աշխատելով ես հասա այն բանին, որ իմ խնամած բոլոր 10 կովերն էլ գեր են և առողջ։ Իմ խնամքին հանձնված բոլոր կովերի ծինր անցավ հաջող, առանց որևէ կորուստի։

Անասնապահների մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանք տանելու լավագույն օրինակ է տալիս նաև Պուշկինո գյուղի կոլխոզի ֆերմայի ագիտատոր ընկ. Իվան Վորմանը։ Իր անցկացրած զրույցների վերջում նա յուրաքանչյուր անգամ դիմում է ունկընդիրներին և հարցնում, թե ի՞նչ կառաջարկեին նրանք՝ ֆերմայում անասունների խնամքն ավելի լավ կազմակերպելու, ավելի բարձր մթերատվության հասնելու համար։ Լսելով կոլխոզնիկների առաջարկությունն-

րը, ագիտատոր Վորմանը օգնում է դրանք
կենսագործելու։ Այսպես օրինակ, ֆերմայի
աշխատողները ցանկություն հայտնեցին
ծանոթանալու շրջանի Կաթնաղբյուր գյուղի
կոլխոզի առաջավոր անասնապահական ֆեր-
մայի աշխատանքների հետ։ Ագիտատոր
Վորմանը նախաձեռնեց ու կազմակերպեց
այդ էքսկուրսիան։ Ֆերմայի աշխատողները
Կաթնաղբյուրի ֆերմայից վերադարձան այն-
տեղի առաջավոր անասնապահների փորձն
ուսումնասիրած և այն սկսեցին կիրառել ի-
րենց մոտ։

Մարտ ամսին ֆերմայի աշխատողները ա-
ռաջարկեցին անասունների խմելու ջուրը մո-
տեցնել գոմերին։ Ագիտատոր Վորմանը կոլ-
խոզնիկների այդ առաջարկության մասին
խոսեց կոլխոզի վարչությունում․ շուտով այդ
առաջարկությունը ի կատար ածվեց և այժմ
անասունները ջրվում են անմիջապես գոմե-
րի մոտ։

Ագիտատոր Վորմանը, իր զրույցների ժա-
մանակ ցույց տալով առաջավոր կոլխոզնիկ-
ների աշխատանքը, միաժամանակ խստորեն
քննադատում է իրենց պարտականություն-
ները չկատարողներին, ետ մնացողներին։

Այսպես օրինակ, իր զրույցներից մեկում
նա ասաց.



— Մեր ֆերմայում նույն պայմաններում
աշխատում են անասնապահներ Ալեքսանդր
Իվանովը, Նադյա Ֆիրսովան ու Իվան
Օսիպովը։ Բայց ինչպե՞ս է, որ ընկեր Իվա-
նովը իր խնամած յուրաքանչյուր կովից
ստացել է 1050 լիտր կաթ, պլանները կա-
տարելով 125 տոկոսով, իսկ Օսիպովն ու
Ֆիրսովան իրենց պլանները կատարում են
միայն 60—70 տոկոսով։ Դրա պատճառն
այն է, որ նրանք անպատասխանատու են
դեպի իրենց աշխատանքը, վատ են խնա-
մում կովերին, ժամանակին չեն կերակրում,
ջրում, մաքրում, վատ են հաճախում ագրո
տեխնիկայի խմբակի պարապմունքներին,
Օսիպովը և Ֆիրսովան իրենց վատ աշխա
տանքով մեր ֆերման ետ են քաշում։

Ագիտատորի այս քննադատությունից
հետո Օսիպովը և Ֆիրսովան սկսեցին ան-
համեմատ լավ աշխատել և ձգտում են հաս-
նել ֆերմայի առաջավոր անասնապահնե-
րին։

Այժմ Ստեփանավանի շրջանի ագիտա-
տորները կոլխոզնիկների մեջ լայնորեն
մասսայականացնում են ՍՍՌՄ Մինիստրնե-
րի Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի ընդունած
«Հանրային անասնաբուծության զարգացման
եռամյա պլանը (1949—1950 թ. թ.)»։

Խ. ՄՈՍԻՆՅԱՆ

# ԶՐՈՒՅՑ ՔԱՐՏԵԶԻ ՄՈՏ

Քարտեզը լուրջ միջոց է և անհրաժեշտ
զենք բոլշևիկյան ագիտացիայի համար։ Նա
լավագույն ցուցադրական փաստաթուղթ է,
որից ագիտատորը պետք է կարողանա շնոր-
հալի ձևով օգտվել։

Քարտեզը ագիտատորի զրույցը դարձնում
է աշխույժ, համոզիչ, հետաքրքիր, լավ լսելի։
Ագիտատորը քարտեզի վրա ցույց տալով
որևէ քաղաք կամ նավահանգիստ, հանքա-
վայր կամ գետ, երկիր կամ ծով, դրանով
իսկ նա դոկումենտալ ձևով ամրապնդում է
իր ամեն մի միտքը։ Քարտեզը հնարավորու-
թյուն է տալիս ունկնդիրներին ոչ միայն
լավ յուրացնելու զրույցի նյութը, այլև լավ
հիշելու այն։ Ահա թե ինչու ամեն մի ագի-
տատոր պետք է կարողանա լավ օգտվել և
օգտագործել քարտեզը ոչ միայն իր զեկու-
ցումների, այլև զրույցների, բարձրաձայն
ընթերցանությունների ժամանակ։

Վերցնենք այսպիսի մի օրինակ. ագիտա-
տորը զրույց է անցկացնում հետպատերազ-



մյան Ստալինյան նոր հնգամյակի նորակա-
ռույցների մասին, նշում է, որ հնգամյակի
ընթացքում վերականգնվելու ու կառուցվե-
լու է 5900 գործարան, ֆաբրիկա, հանքահոր
և այլ ձեռնարկություններ։ Միայն նոր հըն-
գամյակի առաջին տարում՝ 1946 թվակա-
նին, վերականգնվեց և գործարկվեց 800
ձեռնարկություն։ Վերականգնվել են արդյու-
նաբերական այնպիսի հսկաներ, ինչպիսիք
են՝ Ստալինգրադի Տրակտորային գործարա-
նը, Զապորոժստալը, Խարկովի «Սերպ ի մո-
լոտը», Դնեպրի գեղեցկուհին՝ Լենինի ան-
վան հիդրոկայանի հինգ տուրբինները և
այլն։ Արագ թափով կառուցվում են այնպի-
սի խոշոր նորակառույցներ, ինչպես օրի-
նակ՝ Լենինգրադի մետրոպոլիտենը, Անդրր-
կովկասյան մետալուրգիական գործարանը
Ռուսթավում (Վրացական ՍՍՌ), Մինգեչա-
ուրի հիդրոկայանը (Ադրբեջանական ՍՍՌ) և
այլն։ Որքա՞ն պատկերավոր ու տպավորիչ
կլինի, երբ ագիտատորը նշելով այդ բոլորը,
քարտեզի վրա ցույց տա նաև նրանց տեղը։

Որքա՞ն տպավորիչ և գունեղ կլինի ագի-
տատորի զրույցը Չինաստանի ժողովրդա-
ազատագրական բանակի գործողությունների
մասին, եթե նա օգտագործի նաև քարտեզը,
ցույց տա և նշի ազատագրող բանակի խո-

չոր հաջողությունները, նրա անցած ուղին։

Քարտեզը լավ օգտագործելու օրինակ է ցույց տալիս Երևանի Դազգահաշինական գործարանի ձուլող ցեխի ագիտատոր ընկ. Աղամալյանը։ Նրա զրույցը «Մեր հայրենիքի բնական հարստությունները» նյութի մասին մենք մեջ ենք բերում այստեղ։

Նախքան զրույցի պատրաստվելը նա կարդացել էր բավականի գրականություն, լավ ծանոթացել էր քարտեզի հետ։

Դեռ զրույցը չսկսած բանվորները հավաքվել էին քարտեզի մոտ, հարց ու փորձ էին անում, զրույցում իրենց հետաքրքրող հարցերի շուրջը ։

Ագիտատորը զրույցն սկսեց հարցով.

— Ո՞վ կարող է ցույց տալ Սովետական Միության սահմանները։

Շատերը ձայն են խնդրում, ագիտատոր Աղամալյանը քարտեզի մոտ է հրավիրում բանվորներից մեկին։ Նա ճշտորեն ցույց է տալիս ՍՍՌՄ սահմանները։

— Այո՛, ճիշտ է,—ասում է ագիտատորը։ Ընկերնե՛ր, այսօրվա մեր զրույցը լինելու է «Մեր Հայրենիքի բնական հարստությունները»։ Դուք տեսաք, ընկեր Վարդանը ցույց տվեց մեր երկրի սահմանները։

Նայեցե՛ք քարտեզին, աշխարհում ոչ մի



երկիր չի կարող համեմատվել Սովետական Միության հետ իր մեծությամբ, իր հարստությամբ և իր բնական բազմապիսի տըվյալներով։

ՍՍՌՄ-ն բռնում է երկրագնդի ամբողջ ցամաքի մեկ վեցերորդ մասը։ Մեր երկիրն իր տերիտորիայով երկու և կես անգամ մեծ է Ամերիկայի Միացյալ Նահանգներից։ Անգլիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի, Իտալիայի, Իսպանիայի (ցույց է տալիս) և Արևմըտյան Եվրոպայի մյուս բոլոր երկրների տերիտորիան միասին վերցրած հազիվ կազմում է ՍՍՌՄ-ի տերիտորիայի մեկ քառորդ մասը։ Երկրագնդի հասարակածը 40.000 կիլոմետր երկարություն ունի, իսկ մեր երկրի սահմանները մեկ և կես անգամ նրանից ավելի են։

ՍՍՌՄ-ի տերիտորիայի վրա միշտ փայլում է արևը։ Երբ Կուրիլյան կղզիներում արևը մայր է մտնում, Կալինինգրադում ծագում է արևը։ Աշխարհում ոչ մի երկիր չունի այնքան ծովափնյա սահման, որքան ՍՍՌՄ-ն. 14 ծով և 2 օվկիանոս են ողողում նրա ափերը։

Նայեցե՛ք քարտեզին, դուք տեսնում եք կանաչ և բաց կանաչ գույն, դրանք հարթությունններ են, մուգ դեղին-շագանակագույնով

տրված են բարձրությունները, պալարուն գըծերով տրված են գետերը, իսկ անհա կապույտ ներկով նկարված են լճերը, ծովերը, օվկիանոսները։ Սա Սովետական Միության ֆիզիկական քարտեզն է, բայց կա նաև այլ քարտեզ՝ երկրաբանական, նրանում նշված են այնպիսի բաներ, ինչը մենք չենք տեսնում գետնի վրա, ինչը հողի որոշ շերտով ծածկըված է։ Այդ քարտեզը ցույց է տալիս նըստվածքների շերտերը, նրանց դասավորությունը, ցույց է տալիս հանքային հարստությունները և նրանց վայրը։ Այդ քարտեզը համարյա թե նոր է ստեղծվել՝ Հոկտեմբերից հետո, այն ստեղծել են սովետական մարդիկ, սովետական գիտնականները, երկրաբանները։

Սովետական իշխանության տարիներին հայտաբերվեցին նոր, թանկարժեք հանքավայրեր, խիստ ընդարձակվեցին եղածների սահմանները։ Սովետական մարդը, որը իր երկրի լիիրավ տերն է, անում է ամեն ինչ՝ իր երկրի հարստությունները բազմապատկելու համար։

Ի՞նչ բնական հարստություններ ունի Սովետական Միությունը։ Սովետական Միության հարստությունները շատ-շատ են, ոչ



մի երկրում չկա այնքան բնական հարստություն, ինչքան մեզ մոտ։

Աշխարհում Սովետական Միությունը երկրորդ տեղն է բռնում քարածխի պաշարով, իսկ եթե ոչ թե տոննաժը հաշվենք, այլ կալորիականությունը, ապա՝ առաջին տեղը։ Մեր քարածխի գլխավոր ավազաններն են՝ Դոնբասը, Կուզբասը, Կարականդան, որոնցից վերջին երկուսը Սովետական Միության օրով սկսվեցին լավ ուսումնասիրվել։ Դոնբասից հետո քարածխի արդյունահանմամբ երկրորդ տեղը բռնում է Կուզբասը, ապա Կարականդան։

Ամբողջ աշխարհի նավթի պաշարի կեսը գտնվում է մեր երկրում։ Սովետական Միությունը նավթի պաշարներով առաջին տեղն է գրավում աշխարհում։ Սովետական իշխանության օրով հայտաբերվեց «Երկրորդ Բաքուն» Վոլգայի և Ուրալի միջև, որը իր պաշարներով մրցարկում է Բաքվի հետ։ Ընկեր Ստալինը պահանջեց հետախուզել և նավթ գտնել մեր երկրի կենտրոնական մասում։ Եվ սովետական երկրաբանները, հետախույզները գտան այն Սարատովի մոտ, Սիզրանում, Իշիմբայում։ Նոր նավթային աշխարհ ծնվեց, որի ընդհանուր տարա-

ծությունը երեք անգամ մեծ է Իտալիայի տերիտորիայից։

Վիթխարի են Սովետական Միության երկաթահանքերի պաշարները։ Ամբողջ աշխարհի երկաթահանքերի պաշարի հիսուն տոկոսից ավելին գտնվում է ՍՍՌՄ-ում, որով մեր երկիրը գրավում է առաջին տեղը ամբողջ աշխարհում։

Մեծ Լենինը սովետական երկրաբաններին ուղարկեց Կուրսկ՝ երկաթի հանքեր գտնելու համար։ Մեր երկրաբանները, ակադեմիկոս Գուբկինի ղեկավարությամբ հայտաբերեցին մագնիսային երկաթահանքեր և միայն Կուրսկում հայտաբերեցին այնքան, որքան կա ամբողջ երկրագնդի վրա միասին վերցրած։ Իսկ թե որքան կարևոր է երկաթը մեր երկրի համար, այդ դուք շատ լավ գիտեք, որովհետև մեր դազգահները հենց երկաթից են պատրաստված։

Ոչ մի երկիր աշխարհում չունի այնքան տորֆի պաշար, որքան Սովետական Միությունը։ Տորֆը օգտագործվում է հատկապես էլեկտրակայաններ աշխատեցնելու համար։ Նոր Հնգամյակում արդյունահանվելու է ավելի քան 44 միլիոն տոննա տորֆ։ Ամբողջ աշխարհի տորֆի պաշարների կեսը մեր երկրում է գտնվում։



Ցարական Ռուսաստանում չէր բավականացնում ֆոսֆորիտը, այն ներմուծում էին Մարոկկոյից (Աֆրիկայից), բայց սովետական երկրաբանները Հեռու հյուսիսի Կոլա թերակղզում հայտաբերեցին ֆոսֆորիտի հանքեր։ Ֆոսֆորիտից (ապատիտը) ծծմբաթթվի օգնությամբ ստացվում է սուպերֆոսֆատ պարարտանյութը, որը շատ կարևոր է դաշտերի պարարտացման համար։ Աշխարհում առկա ապատիտների պաշարի մեծ մասը գտնվում է Սովետական Միությունում։

Կալիական աղերի պաշարը Սովետական Միությունում մի քանի անգամ ավելի է, քան աշխարհի բոլոր երկրներում միասին վերցրած։ Կալիական աղ հատկապես շատ կա Հյուսիսային Ուրալում։

Սովետական երկրաբանները Սովետական Միությունը դրեցին առաջավոր տեղերից մեկը պղնձի և անագի պաշարների տեսակետից, դրանց հանքերը շատ են Ուրալում, Ղազախստանում, պղնձի խոշոր հանքեր կան նաև Ալավերդում, Ղափանում։

Շատ են նաև Սովետական Միության հարստությունները գետնի վրա։

Սովետական Միությունն ունի ավելի քան 600 միլիոն քառակուսի հեկտար անտառ, որը շատ ավելի է, քան Ամերիկայի Միացյալ Նահանգների, Կանադայի, Շվեդիայի, Ֆինլանդիայի անտառային հարստությունները միասին վերցրած։

Նայեցե՛ք քարտեզին, որքա՜ն շատ են մեր գետերը, որքան էներգիայի վիթխարի աղբյուր են պարունակում իրենց մեջ։ Միայն խոշոր գետերի էլեկտրաէներգիան հավասար է 350 Դնեպրոգէսի։ Խոշոր գետեր են՝ Վոլգան, Ենիսեյը, Լենան, Օբը, Ամուրը, Հյուսիսային Դվինան։ Այդ գետերը նաև լավ հաղորդակցության միջոց են. կարող ենք նավերով Բաքվից գնալ Լենինգրադ։ ՍՍՌՄ-ն գետային ցանցով գրավում է առաջին տեղը աշխարհում։

Ամերիկայի Միացյալ Նահանգները՝ կապիտալիստական աշխարհի ամենահարուստ երկիրը, վաղուց է իր տեղը զիջում մեր երկրին կարևոր օգտակար հանածոների տեսակետից։

Ամբողջ աշխարհի նավթային պաշարների կեսը, երկաթահանքերի պաշարների կեսը, տորֆային պաշարների կեսը, կալիական ա-



ղերի և ապատիտների հանքային պաշարների մեծ մասը, մարգանեցային հանքերի մեկ երրորդականը, գունավոր և հազվագյուտ մետաղների հսկայական պաշարները — ահա մեր հարստությունը, մեր հպարտությունը։ Ընկեր Ստալինն օրինական հպարտությամբ ասաց. «Այդ կողմից, բնական հարստությունների կողմից, մենք ապահովված ենք լիովին»։

Հետպատերազմյան ստալինյան նոր հնգամյակում մեր բնական հարստությունների պաշարները ավելանում են ու ավելանում, նրանց բազայի վրա կառուցվում են հարյուրավոր ու հազարավոր նոր գործարաններ, օրեցօր ծաղկում ու բարգավաճում է Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը, մեր հզոր Հայրենիքը։

Ահա այսպես հետաքրքիր ու բովանդակալից անցկացրեց ագիտատոր Աղամալյանն իր զրույցը քարտեզի մոտ։

ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

—○—

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## 1950 ԹՎԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԻ ՄԱՍԻՆ

*1. 1950 թվից Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսի աշխատանքները վերսկսելու մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման նշանակությունը։*

*2. Գյուղատնտեսական ցուցահանդեսում լայնորեն կցուցադրվի կոլխոզային գյուղացիության այն հերոսական աշխատանքի փորձը, որ ձեռք է բերվել ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի պատմական որոշումը կենսագործելու, ստալինյան նոր հնգամյակը ժամկետից շուտ կատարելու, մեր երկրում գյուղատնտեսական մթերքների լիառատություն ստեղծելու համար մղվող պայքարում։*

*3. Գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունքի նվաճման պայմանները։*

*4. Գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունք նվաճելը յուրաքանչյուր կոլխոզի և կոլխոզնիկի, ՄՏ կայանի, տրակտորիստի, սովխոզի աշխատողների և գյուղատնտեսական մասնագետների պատվի գործն է։*

*5. Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի կազմակերպումը սովետական ժողովրդի մեծագույն նվաճումներից մեկն է, սոցիալիստական գյուղատնտեսության հետպատերազմյան վերելքի վառ արտահայտությունը։*



### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1947 թ. փետրվարյան պլենումի որոշումը: *Առանձին բրոշյուր, Քաղհրատ, 1947 թ.։*

«Կոլխոզային ու սովխոզային հանրային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլա-

նը (1949—1951 թ. թ.)»․ *«Ս. Հ.» 1949 թ. ապրիլի 21։*

«Գյուղատնտեսության զարգացման կենտրոնական խնդիրը»։ *«Պրավդայի» առաջնորդող հոդվածը, տըպագրված «Ս. Հ.» 1949 թ. ապրիլի 20-ի համարում։*

«1950 թ. Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների ընտրության ցուցանիշներն ու պայմանները»։ *«Ս. Հ.» 1949 թ. ապրիլի 7, 8, 10 և 11-ի համարները։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը 1949—1951 թ. թ. անասնաբուծության ասպարեզում բարձր ցուցանիշներ ձեռք բերելու համար գյուղատնտեսության առաջավորներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին։ *«Ս. Հ.» 1949 թ. ապրիլի 22-ի համարը։*

*II*

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊՐՈՖԵՍԻՈՆԱԼ ՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ 10-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԿՈՄՈՒՆԻԶՄ ԿԱՌՈՒՑՈՂՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՆ Է

*1. Պրոֆեսիոնալ միությունների 10-րդ համագումարը Լենինի—Ստալինի մեծ գաղափարներին ՍՍՌՄ աշխատավորության նվիրվածության հզոր ցուցադրումն է։*

*2. ՍՍՌՄ պրոֆեսիոնալ միությունների*



*հաշվետու ժամանակաշրջանի գործունեության արդյունքները։*

*3. Հետպատերազմյան ստալինյան հընգամյակը ժամկետից շուտ կատարելու համար աշխատավորների սոցիալիստական մրցության հետագա է՛լ ավելի ծավալումը պրոֆեսիոնալ միությունների մարտական խնդիրն է։*

*4. Բանվորների և ծառայողների նյութական դրության և կենցաղային սպասարկման բարելավման համար ամենօրյա հոգատարությունը պրոֆմիությունների կարևոր խնդիրն է։*

*5. Մասսաների կոմունիստական դաստիարակությունը պրոֆեսիոնալ միությունների պարտքն է։*

*6. ՍՍՌՄ պրոֆեսիոնալ միությունների նոր Կանոնադրությունը կազմակերպական մի զենք է, որը որոշում է պրոֆմիությունների աշխատանքի ձևերն ու մեթոդները՝ աստիճանաբար սոցիալիզմից կոմունիզմին անցնելու խնդիրներին համապատասխան։*

*7. Սովետական պրոֆեսիոնալ միությունների առաջատար դերը միջազգային բանվորական շարժման ամրապնդման գործում, նրանց պայքարը հանուն կայուն խաղաղու-*

թյան և դեմոկրատիայի, ընդդեմ կապիտալիստական երկրների աշխատավորական մասսաների կյանքի պայմանների վրա կատարվող հարձակման։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Վ. Վ. ԿՈՒԶՆԵՑՈՎ.— Հաշվետու զեկուցում ՀԱՄԿԽ-ի աշխատանքի մասին։ *«Տրուդ», 20 և 21 ապրիլի 1949 թ.։*

Վ. Վ. ԿՈՒԶՆԵՑՈՎԻ զեկուցման համառոտագրությունը. *«Ս. Հ.» 22 ապրիլի 1949 թ.։*

Ն. Վ. ՊԱՊՈՎԱ.— Մանդատային հանձնաժողովի զեկուցումը (պրոֆմիությունների 10-րդ համագումար)։ *«Տրուդ» 20 և 21 ապրիլի 1949 թ.։*

Ա. Ն. ՕՍԻՊՈՎ.— ՍՍՌՄ պրոֆեսիոնալ միությունների կանոնադրության մասին։ *«Տրուդ» 23 ապրիլի 1949 թ.։*

Ընկեր Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին. ՍՍՌՄ պրոֆեսիոնալ միությունների 10-րդ համագումարի կողմից.— *«Ս. Հ.» 29 ապրիլի 1949 թ.։*

ՍՍՌՄ պրոֆմիությունների կազմակերպչական հիմունքները.— *«Տրուդ» 27 ապրիլի 1949 թ., առաջնորդող։*




## III

## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՆԳՐԵՍԸ

*1. Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսը բոլոր երկրների ժողովրդական լայն մասսաների՝ հանուն կայուն խաղաղության մղվող պայքարի միասնության վառ ապացույցն է։*

*2. Կոնգրեսի դելեգատների միահամուռ ելույթները նոր պատերազմի հրձիգների դեմ։*

*3. Խաղաղության կողմնակիցների կոնգրեսը հզոր հարված էր անգլո-ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ պլաններին և խիստ նախազգուշացում՝ պատերազմի հրձիգներին։*

*4. Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի Մանիֆեստը և մշտական Կոմիտե կազմակերպելու որոշումը բոլոր դեմոկրատական ուժերի հետագա մոբիլիզացիայի և միաձուլման հզոր միջոց է հանուն կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության։*

5. *ՍՍՌՄ-ի առաջատար դերը հանուն կայուն խաղաղության և անվտանգության, հանուն միջազգային համագործակցության՝ մեծ և փոքր ազգերի իրավահավասարության սկզբունքների հիման վրա։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


«Պրավդայի» թղթակցի հարցերը և Ի. Վ. Ստալինի պատասխանները.— *«Ս. Հ.» 29 հոկտեմբերի 1948 թ.։*

ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ ամերիկյան «Ինտերնեյշնլ նյուզ սըրվիս» գործակալության եվրոպական գլխավոր դիրեկտոր պ-ն Կինգսբերի Սմիտից 1949 թվի հունվարի 27-ին ստացված հարցերին: *«Ագ. բլոկնոտ» № 3, 1949 թ.։*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիայի 31-րդ տարեդարձը.—*Հայպետհրատ, առանձին բրոշյուրով 1948 թ., էջ՝ 23—35։*

Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի մանիֆեստը.— *«Ս. Հ.» 28 ապրիլի 1949 թ.։*

Խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի բանաձևը.— *«Ս. Հ.» 29 ապրիլի 1949 թ.։*

Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսը.— *«Ագիտատորի բլոկնոտ» № 9, 1949 թ.։*


—○—

## ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

Բ. ԳՈՐԵԼԻԿ.— «Ագիտատորը և պատի թերթը». *Հայպետհրատ, 1949 թ. 58 էջ։*

*«Ագիտատորի գրադարանի» սերիայով լույս տեսած այս բրոշյուրում տրված է բոլշևիկյան ագիտացիայի բազմաթիվ միջոցներից և ձևերից մեկի՝ պատի թերթի մասին, թե ինչպես պետք է ագիտատորն օգտագործի պատի թերթը իր ագիտացիոն աշխատանքի ընթացքում։ Պատի թերթը ագիտացիայի ամենաակնառու միջոցներից մեկն է հանդիսանում, նա օգնում է աշխատավորներին պարզաբանելու կոմունիստական շինարարության խնդիրների նշանակությունը, տվյալ կոլեկտիվի յուրաքանչյուր անդամին ցույց է տալիս նրա անձնական դերը այդ խնդիրների լուծման մեջ։ Դրա համար էլ պետք է մեր գործարանային և կոլխոզային ագիտատորները գործոն մասնակցություն ունենան պատի թերթերում։ Պատի թերթը կատարում է այն, ինչ որ ագիտատորը, միայն ոչ թե բա-*

նավոր, այլ գրավոր խոսքով։ Պատի թերթի միջոցով կատարվող ագիտացիան ունի կոլեկտիվ բնույթ, դրա համար էլ նա պետք է լինի պարզ, համոզիչ և մատչելի մասսաների համար։ Այս բրոշյուրում խոսվում է նաև թերթի բնորոշ, առանձնահատուկ թեմաների մասին։ Այդ առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ նա, պատի թերթը, կառուցվում է տեղական կյանքի փաստերի և օրինակների վրա։ Պատի թերթի հիմնական նյութերը պետք է հանդիսանան փոքրիկ հոդվածներ, նամակներ, որոնք պետք է լինեն արտահայտիչ և ունենան գործնականություն և կոնկրետություն։ Պատի թերթին վերաբերվող հոդվածները կարելի է բաժանել մի քանի տեսակների՝ քննադատական, դրական, ինֆորմացիոն։

Քննադատական հոդվածները պետք է գործնական լինեն, պարունակեն ոչ միայն ցույցում սխալների, թերությունների մասին, այլ և դրանց պատճառների մասին, նրանք պետք է խորհուրդ տան, թե ինչպես վերացնել թերություններն ու սխալները և ինչպես բարելավել աշխատանքը։

Դրական հոդվածների միջոցով ագիտատորը պատի թերթում պետք է օգտագործի արտադրության առաջավորների, բարձր բեր-



քի վարպետների, ստախանովականների աշխատանքի փորձը և ցույց տա, թե նրանք այդ բոլորին ինչ միջոցներով և մեթոդներով են հասել։

Ինֆորմացիոն հոդվածները ևս ագիտացիոն խոշոր նշանակություն ունեն, միայն պետք է որ ինֆորմացիան պարունակի այնպիսի փաստեր, որոնք հարստացնեն ընթերցողի մտահորիզոնը, կազմակերպող ու առաջ մղող ուժ ունենան։

Ագիտատորը պետք է աշխատի պատի թերթում նկարագրել հետաքրքիր անցկացրած զրույցը, հաշվետվություն տա նրա մասին, շարադրի մասնակիցների փայլուն արտահայտությունները, նրանց մտքերը և առաջարկությունները։ Պատի թերթում եղած հոդվածը ագիտատորը կարող է կապել այն հարցի հետ, թե ինչ բան է սոցիալիստական աշխատանքային կարգապահությունը, որոնք են կապիտալիզմի մնացորդները մարդկանց գիտակցության մեջ, ինչի համար և ինչպես է պայքարում պարտիան այդ մնացորդները հաղթահարելու համար։

Ագիտատորը պետք է ձգտի այն բանին, որ պատի թերթում հրապարակված հոդվածներին ծանոթ լինեն իր ունկնդիրները, նրանց համար ընթերցի դրանք, մտքերի փո-

խանակությամբ կազմակերպի հոդվածներում շոշափված հարցերի շուրջը։

Անհնարին է սպառել ագիտացիայի ձևերի այն բազմազանությունը, որ տալիս է պատի թերթի պրակտիկան, հետևաբար ագիտատորները պետք է է՛լ ավելի ամրացնեն իրենց կապերը պատի թերթի հետ և գնահատեն այն, որպես լավագույն միջոց իրենց ամենօրյա ագիտացիայի համար։

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

ՎՖ 01732 Պատվեր № 428 Տիրաժ 8.550
Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան,
Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 10 1949 г.